ամբողջ պատասխանատուութիւնը կը ձըգեն Արեւմուտքի վրայ։ Անոնց մէկ ներկայացուցիչը կ'ըսէ.— «Ութ օրուան մէջ Ֆրանսա եւ Անգլիա այնքան խստացուցին իրենց դիրքը որ բացորոշապէս կ'ապացուցանեն թէ միայն պատրուակ մը կը փնտռեն, զինուորական միջամտութիւն կատարելու համար։ Երբ գնդ. Նասր հաւանեցաւ ընդունիլ Հինգերու յանձնախումբը, ճշդեց թէ որեւէ յանձնառութիւն չստանձներ եւ թէ Տըլըսի ծրագիրը երբեք չի կրնար հիմք ընդունիլ վիճաբանութեանց։ Արդ, ահաւասիկ Անգլիա կը ծանուցանէ թէ ետ պիտի կանչէ իր նաւուղիղները, եթէ խորհրդաժողովը ելքի մը չյանգի արագօրէն։ Մեզի համար, Հինգերու յանձնախումբը Գահիրէ կուգայ ոչ թէ ջրանցքի խնդիրը քննելու, այլ մեզի պարտադրելու վերջնագիր մը զոր վճռած ենք մերժել։ Զինուորական միջամտութիւնը կրնայ ազդանշանը դառնալ երրորդ աշխարհամարտի մը որ պիտի վերջանայ Եւրոպայի խորտակումով՝ Ասիոյ գրոհին տակ։ Քսանհինգ միլիոն Եգիպտացիներ պիտի ըմբռնեն Նասրի հոգին, երբ ձեր վայրաչուներէն մէկը մեր հողին դպչի եւ մէկ միլիառ զինուորներ պատրաստ են օգնութեան հասնելու իրենց»։

Այս առթիւ, չատեր կը հարցնեն թէ Խ. Միութիւնը մինչեւ ո՛ր աստիճան ուժ պիտի տայ Եգիպտոսի։ Մէկ բան պարզ է, — Մոսկուա կ'ուզէ պղտորել արաբական աշխարհին եւ Արեւմուտքի յարաբերութիւնները, ի հարկին խզում յառաջ բերելով, որպէսզի համայնավարները ազատօրէն գործեն Միջին Արեւելքի մէջ։

× Նախագահ Այզընհաուըր իր լրագրական ասուլիսին մէջ զարմանք յայտնեց որ գնդ. Նասր սխալ հասկցած է իր միտքը։ Մ. Նահանգները վճռած են սպառել բոլոր միջոցները, խաղաղօրէն լուծելու համար Սուէզի վէճը եւ կը յուսան թէ Եգիպտոս պիտի ընդունի առաջարկուած հաւաքական ծրագիրը։

Ամերիկայի մէջ կը կարծեն թէ Եգիպտոս պիտի չկրնայ նաւուղիղներ ճարել, թէեւ դիմած է բոլոր երկիրներու։ Մոսկուայի թերթերն ալ հրատարակեցին եգիպտական կառավարութեան կոչը։ Մոսկուայի կուսակցական պաշտօնաթերթը, Փրաւտա, կը մեղադրէ Անգլիան և Ֆրանսան թէ կ'ուզեն չահագործել օտար մասնագէտներու խնդիրը, ճնշում բանեցնելու համար Եգիպտոսի վրայ։

## ՆՈՐ ԴԷՊՔԵՐ ԿԻՊՐՈՍԻ ՄԷՋ

Օգոստոս 31ին ծանր դէպք մը պատահեցաւ Նիկոսիոյ հիւանդանոցին մէջ, երբ երեք դաւադիրներ կը փորձէին փախցնել իրենց մէկ ընկերը որ կը դարմանուէր։ Յարձակողները նախ սպաննեցին անգլիացի յիսնապետ մը։ Փոխադարձաբար կրակ բացուելով, սպաննուեցան երկու դաւադիրներ եւ յոյն պաշտօնեայ մը։ Այս երրորդ անգամն է որ կը փախչի հիւանդանոց փոխադրուած դաւադիրը։ Անգլ. իշխանութիւնը 5000 ոսկիի պարգեւ խոստացած էր, ձերբակալելու համար այս մարդը որ Էօքայի կարեւոր գործիչներէն կը համարուի եւ 25 տարեկան է, Հաճիեորկիու։ Ինք և դաւադիրներէն մէկը, որ վիրաւորուած էր, փախան հիւանդանոցէն։ Ոստիկանները եւ բաղակներ անմիջապէս խուզարկեցին չէնքը, պահարանէ պահարան, բայց չգտան փախստականները։ Հետապնդումները չարունակուեցան չէնքէն դուրս ալ։

Երեք չաբաթ առաջ յեղափոխականները ուրիչ ընկեր մըն ալ փախցուցած էին հիւանդանոցէն։

× Մակարիոս արք.ի փոխանորդը, Անթիմոս եպիսկ., որ հսկողութեան տակ առնուած է, կը հերքէ այն ամբաստանութիւնը թէ կ'օգնէր Էօքայի։ Յունաստան որոշեց բողոքագիր մը ուղղել Ազգաժողովին, Անթիմոսի արգելափակման դէմ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՐԺԱՆԹԻՆԻ մէջ զանգուածային ձերբակալութիւններ կատարուեցան, նախագահ Փեռոնի տապալման առաջին տարեդարձին առթիւ։

ԵԳԻՊՏՈՍ ծանուցագիր մը ուղղեց զինադադարի յանձնախումբին, գանգատելով թէ 13 ազգակիցներ սպաննուած են Իսրայէլացիներու կողմէ։

ԱԼԺԵՐԻՈՅ վարչական կարգուսարքի նոր ծրագիրը կ'ուսումնասիրուի արագօրէն։ Նախարար Լաքոստ բժշկական գործողութեան մը ենթարկուած ըլլալով, հաւանական է որ վարչապետը Ալժերիա երթայ։ Փարիզի մէջ ձերբակալուեցան երկու Ֆրանսացիներ եւ չորս իսլամներ, իբրեւ անդամ Ալժերիոյ ազատագրական ճակատին։ Այս առթիւ տպագրական նիւթեր եւ հազարաւոր թռուցիկներ ալ բռնուեցան։

ՓՌԱՑԱՆՆԵՐԸ ընդհ. ժողով գումարելով, որոշեցին վերջին եւ հանդիսաւոր կոչ մը ուղղել կառավարութեան, որպէսզի միջոցներ ցուցնէ, հացթուխներու աշխատավարձքը աւելցնելու համար։ Հակառակ պարագային, պիտի աւելցնեն հացին գինը, Սեպտ. 15էն սկսեալ, երկու ֆրանք՝ այն հացերուն վրայ որ կը ծախուին քիլոկրամով. 2 ֆրանք՝ 700 եւ 500, մէկ ֆրանք՝ 300 կրամնոց հացերուն վրայ։ Այդ պարագային 15 % պիտի աւելցնեն աշխատավարձքը։

ԼՈՆՏՈՆ գացած խորհրդային մարզիկները չեղեալ համարեցին ծրագրուած մրցումը, իբրեւ բողոք իրենց ընկերուհիներէն Նինայի դէմ եղած ամբաստանութեան դէմ։ Աղջիկը կ'ամբաստանուի թէ հինգ գլխարկ գողցած է։

ՀՍԿԱՅԱԿԱՆ ԳԱՅԹԻՒՆ ՄԸ տեղի ունեցած է արեւին վրայ, ուրբաթ օր։ Ուժը՝ աւելի զօրաւոր քան մէկ միլիառ հիւլէական ռումբ։

ՍԱԿԱՐԱՆ (Օգոստ. 31) — Զոյլ ոսկի 477.000, Նափոլէոն 3440, անգլիական 4250, քսան տոլարնոց 16.680, զուիցերիական 3290, Թղթադրամ (անպաշտօն) տոլար 410, սթերլին 1060, զուիցերիական 98,50, պելժիական 8, լիր 0,63, փեսեթա 9։



ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Գինօ Ալեքսանեան, Տէր եւ Տիկին Գուրգէն Ալեքսանեան, Տէր եւ Տիկին Սամսոն Ալեքսանեան, Տէր եւ Տիկին Առաքել Տէր Մաթէոսեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց զաւկին, եղբօր եւ ազգականին՝

ՄԽԻԹԱՐ ԱԼԵՔՍԱՆԵԱՆԻ

վաղահաս մահուան առթիւ։

●

Այրի Տիկին Էլիզապէթ Էմմանուէլեան եւ զաւակները՝ Ժան, Լեւոն եւ Լիւսի, Տիկին Էլիզ Էմմանուէլեան (Ամերիկա) շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ զաւկին՝

ԷՄՄԱՆՈՒԷԼ ԷՄՄԱՆՈՒԷԼԵԱՆԻ

մահուան առթիւ։



*Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)*

բացած է, օրուան լուրերը հաղորդելու համար:

× Անգլ. զօրքի առաջումը կը շարունակուի շողեպինդ: Եօթը նոր նաւեր զինուորական պիտոյքներ պիտի փոխադրեն բրիտանական նաւահանգիստէ մը:

Կիպրոսի կառավարիչը հրամանագիր մը հրատարակեց, որուն համաձայն Կիպրոսի մէջ կրնան տեղաւորուիլ Ֆրանսայի, Մ. Նահանգներուն, Գանատայի, Աւստրալիոյ, Նոր Զելանտայի, Հարաւ. Ափրիկէի, Հնդկաստանի, Փաքիստանի եւ Սէյլանի զինուորները: Ասոնք պիտի վայելեն այն բոլոր դիւրութիւնները որ սահմանուած են անգլ. զօրքին: Հրամանագիրը կ'արտօնէ որ օտար զինուորները Թղթատարի եւ հեռագրի առանձին հաղորդակցութիւններ հաստատեն: Անոնք պիտի վայելեն նաեւ կարգ մը մաքսային առանձնաշնորհներ:

× Լոնտոնի թերթերը կը գրեն թէ անմիջապէս միջոցներ ձեռք պիտի առնուին, եթէ ընդ. նաւար զոհացում չտայ անյապաղ: Նախ՝ ետ պիտի կանչուին օտար նաւուղիղները որոնք ազդանշանի մը կը սպասեն: Երկրորդ՝ աւելի պիտի խստացնեն տնտեսական եւ եւրոպական սեղմումները, դադրեցնելով միջազգ. նաւարկութիւնը Սուէզէն, ինչպէս եւ ամէն առեւտուր Եգիպտոսի հետ: Իսկ եթէ Եգիպտոս ըրգուիչ դիրք մը բռնէ, դրժելով 1888ի համաձայնութիւնը կամ վնասելով օտար անձերու եւ գոյքերու, այն ատեն անմիջապէս զինուորական գործողութեան պիտի ձեռնարկուի:

× Հինդերու յանձնախումբին Նախագահը, Պ. Մենզիս, կ'ուզէ խոհեմութեամբ չարժել: Պիտի ջանայ համոզել թէ Եգիպտոսի համար ալ օգտակար է Ջրանցքին միջազգային վարչութիւնը, թէ նաւագնացութեան յաւելումը, Ջրանցքին արդիացումը եւ բարգաւաճումը կը կարօտին օտար մասնագէտներու եւ դրամագլուխի եւն. բայց Հինգերու յանձնախումբը շատ յուսատես չերեւար, եւ Պ. Մենզիս ինք ալ ծանր կը նկատէ կացութիւնը:

× Գահիրէի անգլ. դեսպանատունը Եգ. յայտնեց բնակիչներուն հեռանալ Եգիպտոսէն: Դեսպանատան պաշտօնէութիւնն ալ պիտի կրճատուի: Յորդանանի մէջ բազմաթիւ անգլիացի բնտանիքներ տոմսակ առած են մեկնելու համար: Դամասկոսի անգլ. դեսպանատունն ալ յանձնարարեց ազգակիցներուն հեռանալ Սուրիայէն, նկատի առնելով Միջին Արեւելքի կացութիւնը:

× Եգիպտոսի կառավարութիւնը մէկ շաբաթ յետաձգեց երեք անգլիացի ամբաստանեալներու դատավարութիւնը: Հինգ Եգիպտացիներ եւս ձերբակալուեցան, իբրեւ լրտես:

× Գահիրէ կը սպասէ Հնդկաստանի վարչապետը, Նեհրու: Հաւանական է որ միջնորդի դեր կատարէ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀԱՅ ՄԸ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ Թեհրանի մէջ, իբրեւ լրտես: Անունը Յուսիկ Վաղարշակ, այլ անուամբ Արտաշէս, 43 տարեկան, հավտարապետ խորհրդային բանակին մէջ: Իրանի ոստիկանութիւնը կը ծանուցանէ թէ յաջողած է խորտակել խորհրդային լրտեսական «լայն ցանց մը՝ միջազգային կարեւորութեամբ»:

ՇԱՐԼ ԱԶՆԱՒՈՒՐԻ կրած ծանր արկածին առթիւ, երէկ անթէլը կը հաղորդէր թէ գործողութիւն մը կատարուած է ձախ արմուկէն, իսկ աջ թեւը աւելի ծանր վիճակ ունի:

ՀԵՂԵՂԱՆՄԱՆ անձրեւները ահագին աւերներ գործեցին Ֆրանսայի հարաւային արեւելեան եւ միջին նահանգներուն մէջ: Լիոնէն կը հեռագրեն թէ հազար խորանարդ մեթր հող փլաւ Ֆուրվիէրի բլուրէն: Ուրիշ փլուզում մըն ալ տեղի ունեցաւ Լիոն - Մարսէյլ գծին վրայ: Շատ մը կառախումբեր Վալանս հասան երեք ժամ յապաղումով: Կայծակ ինկաւ կարգ մը վայրերու մէջ: Շատ մը օդանաւեր չկրցան վար իջնել, օդը անտեսանելի դարձած ըլլալով: Լիոնի արուարձանին մէջ գետակ մը յորդելով ողողեց Իզերոնի հովիտը: Ջրհեղեղ մը պայթեցաւ Վիշիի վրայ, կտրելով գլխաւոր ճամբան եւ խանգարելով հեռաձայնի հաղորդակցութիւնները: Սէնթ Էթիէնի եւ Սէն Շամոնի մէջ ալ կազի հոսանքը դադրեցաւ, կայծակ ինկած ըլլալով քոքի գործարանին վրայ: Հեղեղներ գոյացան Անըսիի, Կրընոպլի եւ ուրիշ վայրերու մէջ. Վալանսէն ութ արկղներ (օկաուտ) հրաշքով փրկուեցան, երբ շրջապատուած էին ջուրերով:

ՄՈՍԿՈՒԱՅԻ թերթերը կը ծանուցանեն թէ բազմաթիւ նաւուղիղներ կամաւոր կ'արձանագրուին, Սուէզի Ջրանցքին մէջ ծառայելու համար:

ՓԱՐԻԶԻ ամառը վերջացած կը համարուի: Մասնագէտներ դիտել կուտան թէ յիսուն տարիէ ի վեր այսքան գէշ ամառ տեսնուած չէր: Օգոստոսի ընթացքին քսան օր անձրեւ տեղաց եւ միայն 195 ժամ արեւ տեսանք, սովորական 224 ժամուան տեղ: Ամէն օր 300.000 հոգի կը վերադառնան արձակուրդէն:

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ համաշխարհային 40 հիւլէական փորձ կատարած է, Մ. Նահանգները՝ 75, Անգլիա՝ միայն հինգ:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ՎԻԷՆԻ ՄԷՋ

ՎԻԷՆ.— Հայ Կամ. եւ Մարտիկներու միութեան նախաձեռնութեամբ այս կիրակի առաւօտ ժամը 9ին, Համօ Օհանջանեան ակումբին մէջ կը մատուցուի Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն, ողբացեալ

**ԴՐՕՅԻ, Վ. ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆԻ եւ ԳՆԴ. Տ. ԲԱՂԴԱՍԱՐԵԱՆԻ**

յիշատակին:

### ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ

Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի Մարսէյլի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Րաֆֆի պանդոկը, 13 ռիւ Թոպանօ:

Օրակարգ.— Նախապատրաստական աշխատանք պատգամաւորական ժողովի:

# Միութեան պատգամաւորական ժողովը տեղի կ'ունենայ Տէսինի մէջ 22 եւ 23 սեպտեմբերին: Նիստերը կը փակուին 23ի կէսօրէն վերջ, գեղարուեստական ցերեկոյթով մը: Կը հրաւիրուին Տէսինի գաղութը եւ Սեբաստիոյ նահանգի բոլոր հայրենակիցները:

× Ավինեոնի հայրենակիցներէն կը խնդրուի տեսակցութիւն մը կերր. վարչութեան քարտուղարին հետ, Մուրատ Ուսումնասիրացի մասնաճիւղի մը կազմութեան համար: Գրել հետեւեալ հասցէին մինչեւ Սեպտ 7:

Mr. Agopian, Chez M. Gamet
Eutrechaux (Vaucluse)



### ՀԱՅ—ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Մամուլի տակ է Յուլիս—Օգոստոս թիւը (48 էջ):

Մարսիլիոյ մէջ ՀԱՅ-ԲՈՅԺի ներկայացուցիչներն են Ֆօթօ Ռէքս, Պ. Աստւածատուր Քէօսէեան եւ Պ. Արմենակ Շահպազեան:

Տարեկան բաժնեգինը 1000 Ֆր. Ֆրանսա, 1200 Ֆր. արտասահման: Դիմել Շ. Նարդունի, 32 ռիւ տը Թրէվիզ, Փարիզ:

### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՏԷՍԻՆ.— Տարօն Տուրուբերանի Հայր. Միութեան մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Գինօ, Տէր եւ Տիկին Գուրգէն, Տէր եւ Տիկին Սամսոն Ալեքսանեաններուն եւ բոլոր ընտանեկան պարագաներուն Մխիթար Ալեքսանեանի վաղահաս մահուան առթիւ:





### Կ'ՈՒԶՈՒԻ

Թրիքոյի կարող մը եւ երիտասարդ մը 16էն 17 տարեկան, մանիւթանսիոնէր:

Դիմել՝ Թրիքօ Թէրզեանի, 3 ռիւ Փուասոնիէր, Փարիզ (2):

*Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)*

